## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 2—52—78:*





# ԶՐՈՒՅՑ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՎ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԼԱԳԵՐԻ ԵՐԿՐՆԵՐԻ ՍԵՐՏ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

*Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, կապիտալիստական լագերի կողքին ստեղծվեց սոցիալիզմի ու դեմոկրատիայի համաշխարհային լագերը՝ Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի գլխավորությամբ: Խաղաղության, սոցիալիզմի և դեմոկրատիայի լագերը միավորում է Եվրոպայի և Ասիայի 12 պետություններ՝ ավելի քան 900 միլիոն բնակչությամբ: Դեմոկրատական լագերի երկրները գտնվում են իրենց սոցիալական վերափոխումների տարբեր աստիճանների վրա: Սովետական Միության կողքին, որտեղ արդեն կառուցվել են սոցիալիզմի հիմքերը, ժողովրդա-դեմոկրատական երկրները միայն*







առաջին կարևորագույն քայլերն են արել սոցիալիստական շինարարության ուղղությամբ։ Սոցիալիզմի շինարարության գործում ժողովրդական դեմոկրատիայի երկրները հենվում են Սովետական Միության անշահախնդիր ու փոխադարձ աջակցության վրա։ Խաղաղության լագերի բոլոր երկրների միջև ստեղծված հարաբերությունները հիմնվում են նպատակի ու շահերի ընդհանրության վրա, իրավահավասարության ու եղբայրական բարեկամության սկզբունքների վրա։ Այդ հարաբերություններում մարմնավորվում են ազատ և իրավահավասար ժողովուրդների բարեկամության լենինյան մեծ գաղափարները, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները։

Տնտեսական, կուլտուրական և քաղաքական ասպարեզներում սերտ համագործակցած սոցիալիզմի լագերի երկրներից յուրաքանչյուրը ելնում է նոր կյանքի կառուցման բոլոր ասպարեզներում միմյանց օգնելու անկեղծ ցանկությունից։ Եղբայրական համագործակցության փայլուն օրինակ է Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի անխախտ բարեկամությունը։ Չան Կայ-շիի ռեակցիոն կլիկին ջախջախելուց և 1949 թվականի հոկտեմբերի 1-ին



Ժողովրդական Ռեսպուբլիկա հռչակելուց հետո, Չինաստանի 600 միլիոնանոց ժողովուրդը, հենվելով Սովետական Միության եղբայրական օգնության վրա, կարճ ժամկետում վերականգնեց իմպերիալիստների և գոմինդանականների կողմից ավերված ժողովրդական տնտեսությունը և սկսած 1953 թվականից ձեռնամուխ եղավ տնտեսական շինարարության առաջին հնգամյա պլանի կատարմանը։ 1950 և 1951 թվականներին պարիտետային (հավասարության) հիմունքներով ստեղծվեցին սովետա-չինական մի շարք խառն ընկերություններ, որոնք կոչված էին օգնելու չին ժողովրդին՝ կարճ ժամկետներում ընդարձակելու ինդուստրիալ ձեռնարկությունների արտադրական կարողությունը և բարձրացնելու ընդհանուր տեխնիկական մակարդակը։ Արդեն 1953 թվականին այդ ընկերությունների ձեռնարկություններում նավթի հանույթը, 1951 թվականի համեմատությամբ, աճեց 19 անգամ, իսկ բենզինի արտադրությունը՝ 35 անգամ։ Սովետական Միությունը մեծ մասնակցություն է ունենում հնգամյա պլանով Չինաստանում կառուցվող կարևորագույն ձեռնարկությունների շինարարության և գյուղատնտեսության զարգացմանը։

ՍՍՌՄ-ի և ՉԺՌ-ի միջև, բացի տնտեսական ու կուլտուրական համագործակցությու-

նից, գոյություն ունի բարեկամություն, դաշինքի և փոխադարձ օգնության համաձայնություն, որն իր վառ արտահայտությունն է գտել 1950 թվականի փետրվարին կնքված պայմանագրի մեջ։ Սովետական Միությանը և Չինաստանին միմյանց հետ կապում են սերտ բարեկամական հարաբերությունները, որոնք ուղղված են Հեռավոր Արևելքի և ամբողջ աշխարհի խաղաղությունն ու անվտանգությունը ամրապնդելու նպատակին։ ՍՍՌՄ-ի և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի մեծ ժողովուրդների բարեկամությունը ամբողջ աշխարհի խաղաղության պահպանման և ամրապնդման գործում այնպիսի հզոր ուժ է դարձել, որի հավասարը չկա և չի եղել մարդկության պատմության մեջ։

Ինչպես Չինաստանի, այնպես էլ ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների ձեռք բերած հաջողությունների կարևորագույն պայմանը տնտեսական համագործակցության ու փոխադարձ օգնության մեջ է։ «Այդ համագործակցության փորձը ցույց է տալիս,— նշել է Ի. Վ. Ստալինը,— որ ոչ մի կապիտալիստական երկիր չէր կարող այնպիսի իրական և տեխնիկապես որակյալ օգնություն ցույց տալ ժողովրդա-դեմոկրատական երկրներին, որպիսին նրանց ցույց է տալիս



Սովետական Միությունը։ Բանը ոչ միայն այն է, որ այդ օգնությունը առավել էժան և տեխնիկապես առաջնակարգ օգնություն է։ Բանն ամենից առաջ այն է, որ այդ համագործակցության հիմքում դրված է մեկը մյուսին օգնելու և ընդհանուր տնտեսական վերելք ձեռք բերելու անկեղծ ցանկությունը»։

Այդ համագործակցության հետևանքով առկա են արդյունաբերության զարգացման բարձր տեմպեր սոցիալիզմի լագերի բոլոր երկրներում։

Դեմոկրատական լագերի երկրների համագործակցության ամրապնդման գործում խոշոր դեր խաղաց Տնտեսական փոխադարձ օգնության խորհուրդը, որն ստեղծվել է 1949 թվականին։ Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի և այլ համաձայնագրերի միջոցով տարեցտարի ընդլայնվող տնտեսական կապերը Սովետական Միության ժողովրդական դեմոկրատիայի երկրների միջև տալիս են իրենց հիանալի պտուղները։ Միայն 1954 թվականին Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրների արդյունաբերությունը երեք անգամից ավելի արտադրանք թողարկեց, քան մինչպատերազմյան յուրաքանչյուր տարում։

Արագ տեմպերով է ընթանում սոցիալիստական ինդուստրալիզացիան ժողովր-

դական դեմոկրատիայի բոլոր երկրներում։
վերցնենք, օրինակ, Բուլղարիան, որը պա-
տերազմից առաջ արտասահմանից էր ներ-
մուծում նույնիսկ մանգաղն ու գերանդին։
Շնորհիվ աշխատավոր մասսաների ակտի-
վության և Սովետական Միության օգնու-
թյան, ժողովրդական իշխանության տարինե-
րին կառուցվել և շահագործման են հանձ-
նըվել արդյունաբերության տարբեր ճյուղե-
րի հարյուրավոր ձեռնարկություններ. ստեղծ-
ված է սեփական նավաշինություն։

Ժողովրդական Չեխոսլովակիան պողպա-
տի արտադրության ծավալով և մեկ շնչին
ընկնող մի շարք ապրանքների արտադրու-
թյան տեսակետից անցել է կապիտալիստա-
կան այնպիսի ինդուստրիալ երկրներից, ինչ-
պիսիք են Ֆրանսիան և Արևմտյան Գերմա-
նիան։ Մինչև երկրորդ համաշխարհային պա-
տերազմը, Լեհաստանը համարվում էր Եվրո-
պայի հետամնաց երկրներից մեկը։ Ներկա-
յումս Լեհաստանը արդյունաբերական ար-
տադրանքի թողարկմամբ Եվրոպայում գրա-
վում է հինգերորդ տեղը, նա առաջ է անցել
կապիտալիստական զարգացած երկրներ
համարվող Իտալիայից, Շվեդիայից, Հոլան-
դիայից, Բելգիայից և այլ երկրներից։ Բնակ-
չության մեկ շնչին ընկնող ապրանքների ար-
տադրության տեսակետից կապիտալիստա-



կան մի շարք երկրներից անցել է նաև Հուն-
գարիան։

Սովետական Միության ամենօրյա, եղ-
բայրական ու բազմակողմանի օգնությամբ
ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկըր-
ներում բարձրանում են գիգանտ կառուցում-
ներ։ Ժողովրդական Լեհաստանի Նովայա Գու-
տա մետալուրգիական կոմբինատի համար
սարքավորումը տրվեց Սովետական Միու-
թյան կողմից։ Վարշավայում Սովետական
Միության միջոցներով ու ուժերով կառուցվում
է Ստալինի անվան կուլտուրայի և գիտության
պալատը. դա Սովետական կառավարության
կողմից լեհ-սովետական հավերժ բարեկա-
մությունն արտահայտող հիանալի նվեր է։
Չեխոսլովակիայում, Սովետական Միության
օգնությամբ, կառուցվում է Գոտվալդի ան-
վան խոշոր մետալուրգիական կոմբինատը։
Սովետական Միության եղբայրական օգնու-
թյամբ Ռումինիայում արդեն կառուցվել է
տրակտորային խոշոր գործարան։ Ժողովըր-
դական Բուլղարիայի Դիմիտրովգրադ քաղա-
քում սովետական անշահախնդիր օգնու-
թյամբ կառուցվել է Բալկաններում խոշորա-
գույնը հանդիսացող Ստալինի անվան քի-
միական կոմբինատը։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրնե-
րում, սոցիալիստական ինդուստրալիզացիա-

յի հաջող կենսագործման հետ մեկտեղ, կատարվում է գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման պրոցեսը, գյուղացիության աստիճանական անցումը դեպի աշխատանքի բարձր արտադրողական կոլեկտիվ ձևեր։

Սոցիալիզմի լագերի երկրների սերտ համագործակցության ու եղբայրական բարեկամության վառ օրինակ է ժողովրդա-դեմոկրատական երկրներին Սովետական Միության կողմից ցույց տրվող գիտա-տեխնիկական և արտադրական օգնությունը միջուկային ֆիզիկայի բնագավառում հետազոտությունների զարգացման և ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու ասպարեզում։

Դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերը խաղաղության լագեր է և, ինչպես Սովետական Միությունը, այնպես էլ ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրները հաստատակամորեն պաշտպանում և ամրապնդում են իրենց դիրքերը, հանգիստ ու խաղաղ պայմաններ են ստեղծում սոցիալիստական շինարարության համար։ Մեծ ուժով է դրսևորվում սոցիալիզմի լագերի երկրների համագործակցությունը խաղաղության ու ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարում։ Նկատի ունենալով ստեղծվող միջազգային նոր իրադրությունը, որը բխում



է հատկապես փարիզյան համաձայնագրերից, սոցիալիզմի լագերի երկրները ձեռնարկում են համապատասխան միջոցառումներ իրենց անվտանգության հետագա ամրապնդման և խաղաղության ապահովման համար։ Այդ կապակցությամբ կարևորագույն իրադարձություն հանդիսացավ Եվրոպայի խաղաղությունն ու անվտանգությունն ապահովելու վերաբերյալ եվրոպական պետությունների Վարշավայի խորհրդակցությունում ընդունված Բարեկամության, համագործակցության ու փոխադարձ օգնության պայմանագիրը։

Վարշավայի խորհրդակցությանը մասնակցած եվրոպական ութ պետությունները որոշեցին ստեղծել Զինված ուժերի միացյալ հրամանատարություն։ Ժամանակակից պայմաններում դեմոկրատական լագերի երկրների կառավարությունները չէին կարող այլ կերպ վարվել և նրանք ձեռք առան անհրաժեշտ միջոցներ՝ իրենց պաշտպանունակությունն ամրապնդելու, ժողովուրդների խաղաղ աշխատանքը պաշտպանելու և ագրեսորին հակահարված տալու համար։

Սովետական Միությունը և ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրները չեն ուզում հանկարծակիի բերվել և անդուլ կերպով ամրապնդում են խաղաղության լագերի ուժն ու հզորությունը։

---

# ԱՊԱՀՈՎԵՆՔ ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԱՆԽԱՓԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Ա. ԹԻՐԱՔՅԱՆ

Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի քաղբաժնի պետ

*Կենսագործելով մեծ առաջնորդ և ուսուցիչ Վ. Ի. Լենինի իմաստուն ցուցումները այն մասին, որ երկաթուղային տրանսպորտը հանդիսանում է քաղաքի ու գյուղի միջև, արդյունաբերության և գյուղատնտեսության միջև եղած կապի հիմքը, պարտիան և կառավարությունը ինչպես միշտ, նույնպես և այժմ անսահման հոգատարություն են ցուցաբերում երկաթուղային տրանսպորտի հետագա զարգացմանը, նրա անընդհատ հագեցմանը նորագույն տեխնիկայով։*

*Գնալով խոշոր չափով ավելանում է ժողովրդա-տնտեսական փոխադրումների ծավալը։ Պահանջվում է փոխադրել ավելի շատ բեռ, այն տեղ հասցնել արագ, անվտանգ և*



*անկորուստ։ Դրա համար էլ մեր պարտիան և կառավարությունը իրենց որոշումներում նշեցին երկաթուղային տրանսպորտի աշխատանքի հետագա բարելավման ուղիները։ Սովետական երկաթուղայինների առջև խնդիր է դրված բարձրացնել երկաթուղային ճանապարհների ու բաժանմունքների թողունակությունը, մոբիլիզացնել և լրիվ կարողությամբ օգտագործել շարժական կազմը, գծերը, կայարանները, երկաթուղային ձեռնարկությունները։ Այժմ նրանք ջանք չեն խնայում և պայքարում են է՛լ ավելի բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել փոխադրումների ինքնարժեքը, անխախտ կատարել երթևեկության գրաֆիկը, ապահովել երթևեկության անվտանգությունը և հասնել այն բանին, որ պլանները կատարվեն ու գերակատարվեն ոչ թե համախառն, այլ ըստ բեռնատեսակների, ամեն օր, բոլոր կայարանների ու հերթափոխությունների կողմից։*

*Արձագանքելով երկաթուղային տրանսպորտի աշխատողների ակտիվի Համամիութենական խորհրդակցության կողմից ընդունված դիմումին, ինչպես նաև Մոսկվայի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների կոչին, ռեսպուբլիկայի երկաթուղային կոլեկտիվները որոշակի հաջողությունների*

են հասել հինգերորդ հնգամյա պլանի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու գործում։

Աչքի ընկնող հաջողությունների է հասել հատկապես Երևանի ուղեմասը։ Այստեղ կոմունիստների նախաձեռնությամբ վագոնների պարապուրդի հին նորման, որը հավասար էր 24,8 ժամի, կրճատվել և հասցվել է 4,8 ժամի։ Գնալով լավանում են կայարանի ցուցանիշները։ Օրինակ, անցյալ տարվա 4-րդ եռամսյակում բեռնման պլանը կատարվեց 107,8 տոկոսով, բեռնաթափմանը՝ 103,9 տոկոսով և վագոնների միջին պարապուրդը կրճատվեց 5 տոկոսով։ Իսկ այս տարվա ապրիլ ամսում բեռնման պլանը, որը շատ բարձր է անցյալ տարվա համեմատությամբ, կատարված է 114,2 տոկոսով, բեռնաթափմանը՝ 103,5 տոկոսով, վագոնի պարապուրդի իջեցման նորման՝ 103 տոկոսով։

Երկաթուղու շարժական կազմի՝ լոկոմոտիվների ու վագոնների կարողությունը լրիվ օգտագործելու հարցում խրախուսելի աշխատանք են տանում Երևանի ու Լենինականի լոկոմոտիվային բրիգադները։ Ծանրաքարշայինների շարժումը, որը դեռ մի քանի տարի առաջ լայն տարածում գտավ Միության երկաթուղային ցանցում, շատ խոչըն-



դոտների առաջ էր կանգնած Երևանի բաժանմունքում։ Որոշ մարդիկ գտնում էին, որ Երևանի բաժանմունքի պայմաններում դժվար է ծավալել այդ նոր շարժումը։ Սակայն առաջավոր երկաթուղայինները (Վ. Մելիքյան, Մ. Կիրակոսյան, Հր. Եղոյան, Յ. Ասոյան և շատ ուրիշներ) գործնականում ցույց տվեցին, որ ծանրաքարշ շոգեքարշերով կարելի է փոխադրել նորմայից մի քանի հարյուր տոննա ավելի կշիռ ունեցող գնացքներ։ Դեռ անցյալ տարի Նորաշեն—Մասիս, Մասիս—Երևան, Լենինական—Մասիս և Սանահին—Լենինական գծամասերում ավելացվեցին գնացքների կշռային նորմաները։ Հաշվի առնելով ներքին ռեզերվները, բարելավելով գծի ընթացիկ պահպանությունը, նպաստավոր պայմաններ ստեղծվեցին նաև ավելացնել գնացքների տեղամասային արագության նորմաները։

Այսպիսով, մոսկվացիների կոչից հետո, հնարավոր դարձավ բարձր արտադրողական նորմաներ ընդունել նաև վագոնի շրջապտույտի արագացման, բեռնային մեկ օպերացիայի ժամանակ վագոնի պարապուրդը կրճատելու, ապրանքատար գնացքների միջին քաշն ավելացնելու, գնացքների տեխնիկական արագությունը բարձրացնելու և այլ հարցերի ուղղությամբ։

Սոցիալիստական մրցումով ստանձնած պարտավորությունները սիստեմատիկաբար կատարում ու գերակատարում են Լենինականի, Անիի երկաթուղային կայարանները, գծի Լենինականի ու Երևանի ուղեմասերը, որոնք վերջին 6 ամսում մի քանի անգամ առաջնություն են նվաճել Անդրերկաթուղում ու Միության երկաթուղային ցանցում։

Այսպես՝ անցյալ տարվա դեկտեմբերին բաժանմունքը փոխադրել է 185 ծանրաքարշ գնացք, այս տարվա հունվարին՝ 224, փետրվարին՝ 251, իսկ մարտին՝ 330։

Վերջին չորս ամսում ծանրաքարշ գնացքների միջոցով նորմայից ավելի փոխադրված է եղել 130 հազար տոննա ժողովրդատնտեսական բեռ։ Օրինակ, Երևանի շոգեքարշային դեպոյի կոմունիստ մեքենավար Վ. Մելիքյանի ղեկավարած շոգեքարշային բրիգադան, եթե փետրվար ամսում փոխադրել էր 7 ծանրաքարշ գնացք և նորմայից 800 տոննա ավելի բեռ, ապա մարտին փոխադրեց 9 ծանրաքարշ գնացք, որը նորմայից ավելի էր 1.435 տոննայով։ Նույնպիսի հաջողության հասավ նաև Խ. Կարապետյանի ղեկավարած շոգեքարշային բրիգադան, որը մարտ ամսում փոխադրեց 12 ծանրաքարշ գնացք, տեղ հասցնելով նորմայից ավել 2.000 տոննա բեռ։ Լենինականի առաջավոր մեքենա-



վար Եղոյանի բրիգադան մարտ ամսում փոխադրել է 6 գնացք, բոլորն էլ ծանրաքարշ։

Այժմ մեր դեպոների ծանրաքարշայինները հաշվվում են տասնյակներով։ Նրանց լայն աջակցություն են ցույց տալիս դիսպետչերները, կայարանների հերթափոխները, գծային տնտեսության և մյուս ծառայությունների աշխատողները։

Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի կոլեկտիվը, գործի վերածելով հնգամյակի եզրափակիչ տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու առթիվ ստանձնած պարտավորությունները, ընթացիկ տարվա առաջին եռամսյակի բեռնման պլանը կատարեց 110,9 տոկոսով, բեռնաթափմանը՝ 108,7 տոկոսով, գնացքների տեղամասային արագության նորման՝ 103 տոկոսով, տեխնիկական արագությանը՝ 107,6 տոկոսով, մարշրուտացման պլանը՝ 119,1 տոկոսով, շոգեքարշերի միջին օրական վազքի առաջադրանքը՝ 113,8 տոկոսով, վագոնի պարապուրդը բեռնային մեկ օպերացիայի ընթացքում կրճատել է 7,5 տոկոսով և վագոնի շրջապտույտը, նորմայի համեմատությամբ, արագացրել է 2 տոկոսով։

Կոլեկտիվի աշխատանքի հաջողություններից մեկն էլ այն է, որ նա զգալի չափով բարելավել է համագործակցությունը և աշ-

խատանքի պլանավորումը երկաթուղու կողմից սպասարկվող հիմնարկ-ձեռնարկությունների հետ։

Մենք ունենք շատ ցեխեր և առանձին կոլեկտիվներ, որոնք արդեն կատարել են հնգամյա պլանը և աշխատում են հետագա տարիների հաշվին։ Օրինակ, Լենինականի վագոնային դեպոն ժամկետից 9 ամիս շուտ կատարեց վագոնների նորոգման հնգամյա պլանը։

Բաժանմունքը հաղթանակով դուրս եկավ նախամայիսյան սոցիալիստական մրցությունից։

Չնայած ձեռք բերած այս հաջողություններին, բաժանմունքում կան մի շարք թերություններ։ Դեռևս լիակատար ճշտությամբ չի կատարվում գնացքների երթևեկության գրաֆիկը։ Բաժանմունքում իսպառ չեն լիկվիդացվել բեռների կորուստները, փչացումները և խոտանի ու վթարի դեպքերը։

Ռեսպուբլիկայի երկաթուղայինները արագ կերպով կվերացնեն գոյություն ունեցող թերությունները և պատվով կկատարեն իրենց առջև դրված նոր խնդիրները։

---



# ԽՄԲԱԿԱՅԻՆ ԵՎ ԱՆՀԱՏԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻՈՆ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## Վ. ԽՆԴԻԲԱՐՅԱՆ

Սովետական մարդիկ ջերմորեն սիրում են իրենց Հայրենիքը, անդադրում հոգ են տանում նրա ծաղկման ու բարգավաճման համար։ Նրանք ուժ և եռանդ չեն խնայում Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից առաջադրվող խնդիրները պատվով կատարելու գործում։ Այդ է պատճառը, որ մեր երկրի յուրաքանչյուր աշխատավոր մեծագույն հետաքրքրություն է հանդես բերում այն բոլոր իրադարձությունների նկատմամբ, որոնք տեղի են ունենում Սովետական Միության մեջ և նրա սահմաններից դուրս։

Ագիտատորները մեծ անելիքներ ունեն աշխատավորների այդ ցանկություններին ընդառաջ գնալու, նրանց հետաքրքրող բոլոր հարցերին գոհացուցիչ պատասխան տալու գործում։ Ուստի մեր ագիտատորների ա-

ռաջնահերթ խնդիրն է՝ պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ու օգնությամբ, գլխավորել աշխատավորների քաղաքական բարձր ակտիվությունը և նրանց լայն շրջանում սիստեմատիկաբար ագիտացիոն-բացատրական աշխատանք կատարել։ Հասնել այն բանին, որ ունկընդիրները ճիշտ հասկանան պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականությունը և միջազգային դրության վերաբերյալ հարցերը։

Այդ նպատակին հասնելու գործում խոշոր նշանակություն ունեն խմբակային և անհատական ագիտացիոն զրույցները։ Խմբակային և անհատական զրույցներն ագիտացիոն աշխատանքի այն ձևերից են, որոնք գործնականում հրաշալի արդյունք են տվել։ Միշտ էլ քաղաքական և տնտեսական կամպանիաների ընթացքում բազմաթիվ ագիտատորներ խելացի կերպով օգտվել են ագիտացիայի այդ ձևից։ Ո՞րն է խմբակային և անհատական ագիտացիոն զրույցների առավելությունը։ Ամենից առաջ այն, որ ագիտացիայի այդ ձևը անմիջական և կենդանի կապ է ստեղծում ունկնդիրների և ագիտատորի միջև։ Այն ագիտատորին հնարավորություն է տալիս ավելի մոտիկից ծանոթանալ



մարդկանց հետ, ժամանակին իմանալ, թե ինչ է հուզում նրանց, ինչ ցանկություններ և պահանջներ ունեն։ Ահա, օրինակ, Երևանի Կոնսերվի գործարանի ագիտկոլեկտիվը, որը մտածված կերպով օգտագործում է աշխատավորների հետ խմբակային և անհատական զրույցներ կազմակերպելու ագիտացիոն աշխատանքի ձևը։ Այստեղ գրեթե բոլոր ագիտատորները պարբերաբար խմբակային կամ անհատական զրույցներ են ունենում գործարանի բանվոր-ծառայողների հետ։ Օրինակ, օրերս նույն գործարանի տարաների ցեխի ագիտատոր Ս. Սարգսյանն ավարտելով իր հերթական զրույցը ունկնդիրների հետ, լսելով և պատասխանելով նրանց հարցերին, եկավ այն եզրակացության, որ անհրաժեշտ է ունկնդիրների համար առաջիկայում կազմակերպել հատուկ զրույց՝ Մերձավոր և Միջին Արևելքում ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ պլանների մասին։ Երբ տեղի ունեցավ այդ զրույցը, ունկնդիրները սիրով լսեցին այն։ Ագիտատորը մանրամասնորեն պարզաբանեց ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ պլանների էությունը։

Խմբակային կամ անհատական զրույցները լավագույն միջոց են քաղաքական-բացատրական աշխատանք կատարելու նույ-

նիսկ ամենափոքրաթիվ մարդկանց հետ։ Եթե դասախոսություններ և զեկուցումներ կազմակերպելու համար անհրաժեշտ է ունենալ մեծ թվով ունկնդիրներ, ապա խմբակային և անհատական զրույցներ անցկացնելու դեպքում հարկ չկա սպասել մեծ թվով ունկնդիրների։ Այսպես, բրիգադաներում, ֆերմաներում, մեքենա-տրակտորային կայաններում, ակումբում, կամ տներն այցելելիս ագիտատորը հանդիպում է իր ունկընդիրներին։ Նրանցից ոմանք սկսում են հարցեր տալ ագիտատորին, թե առօրյա կյանքից և թե Սովետական Միության արտաքին ու ներքին դրության վերաբերյալ։ Այսպիսով տեղում առաջ է գալիս ագիտացիոն զրույց։ Ագիտատորը չի կարող սպասել, որ հավաքվեն շատ մարդիկ, կամ ինչպես ասում են աուդիտորիան մեծ լինի։ Ինքնին հասկանալի է, որ ագիտատորը պետք է անմիջապես, առանց հապաղելու, հենց տեղում գոհացուցիչ պատասխան տա ունկնդիրներին, օգտագործելով անհատական ագիտացիոն զրույցի ձևը։ Օրինակ, հաճախ այդպիսի դեպքեր են լինում Արտաշատի շրջանի Անաստասավանի կոլտնտեսությունում։ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս ագիտատոր Անդրանիկ Մուրադյանն աշխատանքից հետո կոլտնտեսության ակումբում



հանդիպեց հարևան բրիգադայի անդամներից երկու հոգու, որոնք դիտում էին ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումին նվիրված ստենդը։ Վերջիններս ագիտատորին հարց տվեցին, թե ինչ է անելու իրենց կոլտնտեսությունը պարտիայի կողմից առաջադրված խնդիրները պատվով կատարելու համար։ Ագիտատորը նրանց մանրամասնորեն պատմեց, որ իրենց կոլտնտեսությունը այս տարի պայքարում է յուրաքանչյուր հեկտարից ստանալ 35 ցենտներ բամբակ, նախատեսված 24 ցենտների դիմաց, 400 ցենտներ բանջարեղեն՝ 320 ցենտների դիմաց, 130 ցենտներ խաղող՝ 125 ցենտների դիմաց և այլն։ Անհատական զրույցից հետո կոլտնտեսականները քննադատական դիտողություն արեցին, որ լավ կլիներ ակումբում պատրաստեին հատուկ ստենդ, որը ցույց տար, թե ինչի համար է պայքարում կոլտնտեսությունը ընթացիկ գյուղատնտեսական տարում։ Կոլտնտեսականների քննադատական դիտողությունն անմիջապես հաշվի առնվեց և մի քանի օրից հետո կոլտնտեսության ակումբում պատրաստվեց հատուկ ստենդ հետևյալ վերնագրով. «Ինչի համար է պայքարում մեր կոլտնտեսությունն այս տարի»։

Ագիտացիոն զրույցն իր նպատակին է

ծառայում միայն այն ժամանակ, երբ այն գործնականում տալիս է դրական արդյունք։ Խմբակային և անհատական զրույցների առավելություններից մեկն էլ այն է, որ այն մտքերի աշխույժ փոխանակություն է ստեղծում ունկնդիրների միջև։ Բացի այդ, ունկնդիրները, լինելով փոքրաթիվ, հնարավորություն ունեն ավելի խորը և ավելի բազմակողմանիորեն ուսումնասիրել այն թեման, որի մասին ագիտատորը զրույց է անցկացնում։ Ահա, թե ինչպիսի դրական արդյունքի հասավ Սպիտակի շրջանի Ջիգդամալ գյուղի Մոլոտովի անվան կոլտնտեսության դաշտավարական երկրորդ բրիգադայի ագիտատոր, անվանի ճակնդեղագործ Ս. Մխիթարյանը, երբ սկսեց ունկնդիրների հետ մտածված ու նպատակասլաց կերպով անցկացնել խմբակային և անհատական զրույցներ։ Ճակնդեղի բարձր բերք ստանալու առաջավոր փորձի վերաբերյալ նա բազմաթիվ անգամ զրույցներ ունեցավ կոլտնտեսականների հետ։ Շատ հաճախ նա առաջավոր փորձի մասին զրույց էր ունենում միայն մեկ մարդու հետ, օրինակ, ջրվորի հետ և նրան մանրակրկիտ պարզաբանում ճակընդեղի ցանքերը ակոսային եղանակով ոռոգելու նպատակահարմարությունը։ Այդ զր-



րույցների շնորհիվ բրիգադան դարձավ առաջավոր, նվաճեց ճակնդեղի բարձր բերք։ Նման օրինակներ շատ կան տեղերում։

Ագիտատորներից ոմանք թերագնահատում են անհատական ագիտացիան և ձգտում են ոչ թե մեկ ունկնդրի, այլ շատ մարդկանց հետ մի անգամից զրույց ունենալ, առանց հոգ տանելու այն ունկնդիրների մասին, որոնք հնարավորություն չունեն կոլեկտիվ կերպով մասնակցելու զրույցին։ Ինչ խոսք, որ նման ագիտատորները խորապես սխալվում են։ Անհատական ագիտացիան նույնպես աշխատավորների մեջ քաղաքական-բացատրական աշխատանք կատարելու տարածված և արդյունավետ ձևերից մեկն է, որը ստուգված է գործնականում և այն պետք է լայնորեն օգտագործել։

Անհատական ագիտացիոն զրույցները ոչ չափով տարբերվում են խմբակային զրույցներից։ Այդ տարբերությունն այն է, որ խմբակային զրույցներին մասնակցում են մի շարք մարդիկ, իսկ անհատական զրույցներին մեկ կամ երկու հոգի։ Բայց նրանց բովանդակությունը իհարկե նույնն է։ Այսինքն ագիտացիոն զրույցի միջոցով պարզաբանել պարտիայի և կառավարության որոշումները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, մեր երկրի

պաշտպանունակությունն ամրապնդելու, ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման վերաբերյալ, ինչպես նաև զրույցներ՝ քաղաքական և գիտական թեմաների ու միջազգային դրության մասին։

Խմբակային և անհատական ագիտացիոն զրույցները, որպեսզի հետաքրքիր և բովանդակալից լինեն, ագիտատորները պետք է լայնորեն օգտագործեն ցուցադրական միջոցները՝ ալբոմները, քարտեզները, դիագրամաները, ֆոտոմոնտաժները, ցուցափեղկերը և ցուցադրական ագիտացիայի շատ այլ նյութեր։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

# ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԳՅՈՒՂԻ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Շնորհիվ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության անդուլ հոգատարության, ինչպես եղբայրական մյուս ռեսպուբլիկաների, այնպես էլ Սովետական Հայաստանի աշխատավորությունը կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում տարեցտարի աննախընթաց վերելք է ապրում։ Այդ մասին են վկայում ստորև բերվող թվերն ու փաստերը։

★ Լուսավորության մինիստրության տվյալների համաձայն 1954—55 ուսումնական տարում ռեսպուբլիկայի տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում սովորող 288.562 աշակերտներից 179.669-ը կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի զավակներ են։

Մեծ թիվ են կազմում նաև նախորդ տարիներին գյուղական վայրերում միջնակարգ կրթություն ստացած և ներկայումս Մոսկվայի, Լենինգրադի, Երևանի և բազմաթիվ այլ քաղաքների բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողները։

★ Պարտիան և կառավարությունը հատուկ ուշա-

դրություն են դարձնում գյուղական դպրոցների ցանցը տարեցտարի ընդարձակելու վրա։ Միայն 1954—1955 ուստարում գյուղական դպրոցների ընդհանուր քանակը ռեսպուբլիկայում հասնում է 1.085-ի, այդ թվում գյուղերիտ դպրոցներինը՝ 114-ի։ Գյուղական դպրոցներում այժմ աշխատում են ավելի քան 8.300 ուսուցիչներ։

★ Ամեն տարի հսկայական միջոցներ են հատկացվում գյուղական դասատուների կուլտ-կենցաղային պահանջները բավարարելու նպատակին։ Վերջին երկու տարում գյուղական վայրերի ուսուցիչների համար արդեն կառուցվել ու շահագործման են հանձնվել 36 բնակելի շենքեր, որոնցից յուրաքանչյուրում տեղավորվել են 4—5 և ավելի ընտանիքներ։

★ Հատուկ ուշադրություն է դարձվում գյուղական դպրոցները ուսուցչական լավագույն կադրերով ապահովելու վրա։ Այս տարի գյուղական դպրոցներում աշխատող 8.300 ուսուցիչներից մոտ 3.500-ը ունեն բարձրագույն կրթություն, իսկ 2.500-ը՝ թերի բարձրագույն։

★ Զգալիորեն ավելացել է նաև գյուղերիտ դպրոցներում աշխատող ուսուցիչների թիվը և բարձրացել է նրանց որակը։ Ընթացիկ տարում գյուղերիտ դպրոցների 1.047 դասատուներից 327-ը ունեն բարձրագույն, իսկ 271-ը թերի բարձրագույն կրթություն։

★ Վերջին հնգամյակի չորս տարիների ընթացքում ռեսպուբլիկայում կառուցվել ու շահագործման են հանձնվել 48 դպրոցական նոր շենքեր։ Դպրոցների այդ



ընդհանուր թվի մոտ կեսը մասը բացվել է գյուղական վայրերում։

★ Դպրոցական ցանցի ընդարձակման և դասատուների որակի բարձրացման հետ միաժամանակ հսկայական միջոցներ են հատկացվում դպրոցները լաբորատոր նորագույն սարքավորումներով ապահովելու և գույք ձեռք բերելու վրա։ 1954—55 ուստարում ռեսպուբլիկայի դպրոցներում ստեղծվել են 53 նոր կաբինետ-լաբորատորիաներ և գնվել է 881 հազար ռուբլու արժողությամբ գույք։

★ Անընդհատ ավելանում են Պետական բյուջեով Լուսավորության մինիստրությանը նախատեսվող հատկացումները։ Այսպես, օրինակ, եթե 1953—54 ուսումնական տարում ռեսպուբլիկայի լուսավորության նպատակներին հատկացվել է մոտ 340 միլիոն ռուբլի, ապա 1954—55 ուստարում այդ գումարը ավելացել է ևս չորս միլիոն ռուբլով։

★ 1954 թվականին Կուլտուրայի մինիստրության սիստեմի և այլ գերատեսչությունների գծով (այդ թվում պրոֆմիութենական, կոլտնտեսային և այլն) ռեսպուբլիկայում գործել են 1.647 գրադարան-ընթերցարաններ, չորս միլիոն 550 հազար կտոր գրքային ֆոնդով, որից գյուղական վայրերում գործել են 1.420 գրադարան, մոտ երեք միլիոն 75 հազար կտոր գրականությամբ։ Այս թվի մեջ չի մտնում Երևանի Ալ. Մյասնիկյանի անվան Պետական գրադարանը, որն ունի 3 միլիոն 31 հազար կտոր գիրք։

Ինչպես քաղաքային, այնպես էլ գյուղական գրա-

դրությունն են դարձնում գյուղական դպրոցների ցանցը
տարեցտարի ընդարձակելու վրա։ Միայն 1954—1955
ուստարում գյուղական դպրոցների ընդհանուր քանակը
ռեսպուբլիկայում հասնում է 1.085-ի, այդ թվում
գյուղերիտ դպրոցներինը՝ 114-ի։ Գյուղական դպրոց-
ներում այժմ աշխատում են ավելի քան 8.300 ուսու-
ցիչներ։

★ Ամեն տարի հսկայական միջոցներ են հատկաց-
վում գյուղական դասատուների կուլտ-կենցաղային պա-
հանջները բավարարելու նպատակին։ Վերջին երկու
տարում գյուղական վայրերի ուսուցիչների համար
արդեն կառուցվել ու շահագործման են հանձնվել 36
բնակելի շենքեր, որոնցից յուրաքանչյուրում տեղավոր-
վել են 4—5 և ավելի ընտանիքներ։

★ Հատուկ ուշադրություն է դարձվում գյուղական
դպրոցները ուսուցչական լավագույն կադրերով ապա-
հովելու վրա։ Այս տարի գյուղական դպրոցներում աշ-
խատող 8.300 ուսուցիչներից մոտ 3.500-ը ունեն բարձ-
րագույն կրթություն, իսկ 2.500-ը՝ թերի բարձրագույն։

★ Զգալիորեն ավելացել է նաև գյուղերիտ դպրոց-
ներում աշխատող ուսուցիչների թիվը և բարձրացել է
նրանց որակը։ Ընթացիկ տարում գյուղերիտ դպրոց-
ների 1.047 դասատուներից 327-ը ունեն բարձրագույն,
իսկ 271-ը թերի բարձրագույն կրթություն։

★ Վերջին հնգամյակի չորս տարիների ընթացքում
ռեսպուբլիկայում կառուցվել ու շահագործման են
հանձնվել 48 դպրոցական նոր շենքեր։ Դպրոցների այդ



ընդհանուր թվի մոտ կես մասը բացվել է գյուղական վայրերում։

★ Դպրոցական ցանցի ընդարձակման և դասատուների որակի բարձրացման հետ միաժամանակ հսկայական միջոցներ են հատկացվում դպրոցները լաբորատոր նորագույն սարքավորումներով ապահովելու և գույք ձեռք բերելու վրա։ 1954—55 ուստարում ռեսպուբլիկայի դպրոցներում ստեղծվել են 53 նոր կաբինետ-լաբորատորիաներ և գնվել է 881 հազար ռուբլու արժողությամբ գույք։

★ Անընդհատ ավելանում են Պետական բյուջեով Լուսավորության մինիստրությանը նախատեսվող հատկացումները։ Այսպես, օրինակ, եթե 1953—54 ուսումնական տարում ռեսպուբլիկայի լուսավորության նպատակներին հատկացվել է մոտ 340 միլիոն ռուբլի, ապա 1954—55 ուստարում այդ գումարը ավելացել է ևս չորս միլիոն ռուբլով։

★ 1954 թվականին Կուլտուրայի մինիստրության սիստեմի և այլ գերատեսչությունների գծով (այդ թվում պրոֆմիութենական, կոլտնտեսային և այլն) ռեսպուբլիկայում գործել են 1.647 գրադարան-ընթերցարաններ, չորս միլիոն 550 հազար կտոր գրքային ֆոնդով, որից գյուղական վայրերում գործել են 1.420 գրադարան, մոտ երեք միլիոն 75 հազար կտոր գրականությամբ։ Այս թվի մեջ չի մտնում Երևանի Ալ. Մյասնիկյանի անվան Պետական գրադարանը, որն ունի 3 միլիոն 31 հազար կտոր գիրք։

Ինչպես քաղաքային, այնպես էլ գյուղական գրա-

դարանների քանակն ու գրքային ֆոնդը այս տարի զգալիորեն ավելացել է։

★ 1950 թվականի հետ համեմատած, 1954 թվականին, ռեսպուբլիկայում ավելացել է նաև ակումբների ու կուլտուրայի տների քանակը։ Եթե 1950 թվականին ակումբային հիմնարկների ու կուլտուրայի տների թիվը կազմում էր 1.163, ապա 1954 թվականին այն հասավ 1.200-ի, որից գյուղական վայրերում՝ 1.036 միավորի, 1.683 աշխատողներով։ 1955 թվականին բացվել և բացվելու են 90 նոր ակումբ-գրադարաններ ու կուլտուրայի տներ, որից 75-ը՝ գյուղական վայրերում։

★ Մեծ ուշադրություն է դարձվում կոլտնտեսային աշխատավորության կինոսպասարկման վրա։ Այժմ գյուղական վայրերում գործում են 91 շրջիկ և 241 ստացիոնար կինոսարքավորումներ։ 1954 թվականի ընթացքում միայն գյուղական վայրերում տրվել է 53.548 կինոսեանս, որը դիտել են 2 միլիոն 309.500 մարդ։ 1953 թվականի համեմատությամբ՝ սեանսների թիվն ավելացավ 5.175-ով, իսկ դիտողների թիվը՝ 590,600 մարդով։

★ Կոլտնտեսային աշխատավորության կուլտ-սպասարկման ուղղությամբ իրենց հերթին զգալի աշխատանք են կատարել գյուղերում գործող 5 միջշրջանային թատրոնները։ Նրանք 1953 թվականին շրջկենտրոններում ու գյուղերում ցուցադրել են 5.300 ներկայացում։ Հանդիսատեսների թիվը այդ նույն ժամանակ եղել է 183.200 մարդ։ 1954 թվականին ներկայացումների թի-



վը ավելացել է, հասնելով 1.283-ի, իսկ դիտողների թիվը՝ 226 հազարից ավելի։

★ 1954 թվականի վերջերին տեղի ունեցած գեղարվեստական ինքնագործունեության քաղաքային և շրջանային օլիմպիադաներին մասնակցել են 330 ինքնագործ զանազան խմբեր (երգի-պարի, թատրոնային, ժողգործիքների անսամբլի և այլն) ու բազմաթիվ անհատ կատարողներ, թվով մոտ 13.000 մարդ։

★ Գնալով անընդհատ բարելավվում է ռեսպուբլիկայի ինչպես քաղաքային, այնպես էլ գյուղական ազգաբնակչության բուժսպասարկման գործը։ Ընթացիկ տարվա տվյալներով, 1913 թվականի համեմատությամբ, հիվանդանոցների թիվը ռեսպուբլիկայում աճել է մոտ 12 անգամ, մահճակալների թիվը՝ ավելի քան 51 անգամ։ Առողջապահության գծով ազգաբնակչության յուրաքանչյուր շնչի վրա ծախսվող գումարը ավելացել է մոտ 560 անգամ, բժիշկների թիվը՝ մոտ 60 անգամ։

★ Ցարական կառավարության օրոք առողջապահության գործը գտնվում էր միանգամայն անտանելի պայմաններում։ 1912 թվականին Երևանի նահանգում ազգաբնակչության յուրաքանչյուր շնչի վրա առողջապահության գծով ծախսվել է ընդամենը 25 կոպեկ, լուսավորության գծով՝ 36 կոպեկ, իսկ «կարգի պահպանման» (ժանդարմերիա, բանտ և այլն) գծով՝ 5 ռուբլի 85 կոպեկ։

★ Ներկայումս Սովետական Հայաստանի բոլոր շրջաններում գործում են շրջանային հիվանդանոցներ ի-

րենց մասնագիտացված բաժիններով՝ վիրաբուժական, ծննդաբերական, մանկական, թերապևտիկ և այլն։ Ռեսպուբլիկայում գործում են 21 շրջանային և քաղաքային ինքնուրույն ծննդատներ, 122 կանանց և մանկական կոնսուլտացիաներ և 42 սանիտարա-համաճարակային կայաններ։

Միայն գյուղական վայրերում գործող ծննդաբերական բաժանմունքների թիվը ներկայումս հասնում է 114-ի, 256 մահճակալով, իսկ մշտական մսուրներինը՝ 38-ի, 965 երեխայի համար, սեզոնային մսուրներինը՝ 410-ի, 8.582 երեխայի համար։

★ Վերջին տարիներում գյուղական հիվանդանոցները համալրվել են մասնագիտական հիմնական կադրերով։ Ռեսպուբլիկայի 28 շրջանների հիվանդանոցներում աշխատում են թերապևտ բժիշկներ, վիրաբույժներ, մանկաբարձ-գինեկոլոգներ, մանկական բժիշկներ, ռենտգենոլոգներ, աչքի, քիթ-կոկորդի մասնագետներ և սանիտարական բժիշկներ։

Յուրաքանչյուր տարի վերաորակավորման դասընթացներում սովորում են շրջաններից մեկնած ավելի քան 200 բժիշկներ։

★ Ռեսպուբլիկայի ազգաբնակչությանը մասնագիտացված բուժ. սպասարկում կազմակերպելու և բժիշկների որակը բարձրացնելու գործում մեծ աշխատանք են կատարում Հայաստանի թվով 7 առողջապահական գիտա-հետազոտական ինստիտուտները և բժշկական ինստիտուտը։ Նրանք հագեցված են բժշկական նորագույն սարքավորումներով և կոմպլեկտավորված բարձր մասնագիտական կադրերով։

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

# ԱՖՐԻԿԱՅԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆ ԱԶԳԱՅԻՆ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Պ. ԴԵՄՉԵՆԿՈ

Բուրժուական գրականության մեջ դեռ մինչև վերջին ժամանակներս Աֆրիկան անվանում էին «քնած կոնտինենտ» (մայր ցամաք)։ Սակայն վերջին տաս տարվա իրադարձությունները ակնառու ցույց են տալիս, որ քնած կոնտինենտն արթնացել է։ Աֆրիկայի բոլոր մասերում աշխատավորները ավելի ու ավելի ակտիվորեն պայքարի են ելնում իմպերիալիստական ճնշման դեմ, հանուն լավագույն կյանքի, հանուն ազգային անկախության։

Աֆրիկան գաղութային և կախյալ երկրների կոնտինենտ է։ Նրա տերիտորիայի հինգ վեցերորդական մասը, որը հավասար է 30 միլիոն քառակուսի կիլոմետրի, կազմում են իմպերիալիստական տերությունների գաղութները։ Գաղութներում ապրում է 140 միլիոնից

ավելի մարդ, կամ՝ կոնտինենտի ամբողջ բնակչության երեք քառորդ մասը։

Աֆրիկյան միայն չորս երկրներ են պաշտոնապես համարվում ինքնուրույն պետություններ, այն է՝ Եգիպտոսը, Եթովպիան, Լիբիան և Լիբերիան։ Սակայն այդ երկրներում իշխողը օտարերկրյա կապիտալն է, և աշխատավորները դաժան շահագործման են ենթարկվում Եվրոպայի ու Աֆրիկայի իմպերիալիստների կողմից։

Աֆրիկան ունի հսկայական բնական հարստություններ և հանդիսանում է հանքային ու գյուղատնտեսական հումքի շատ տեսակների մատակարարող։ Բավական է ասել, որ Աֆրիկան տալիս է ադամանդի համաշխարհային հանույթի (առանց ՍՍՌՄ-ի) ավելի քան 90 տոկոսը, կոբալտի 80 տոկոսը, քրոմի և մարգանեցի հանքաքարի մեկ երրորդը, ոսկու ավելի քան կեսը, ինչպես նաև մեծ քանակությամբ ուրանի և երկաթի հանքանյութ, ֆոսֆատ, պղինձ, կաուչուկ և այլն։ Այստեղ կան բոլոր անհրաժեշտ ռեսուրսները տնտեսական արագ զարգացման համար, ժամանակակից արտադրող ու վերամշակող արդյունաբերության ստեղծման համար, գյուղատնտեսությունը մեքենաներով զինելու համար։



Սակայն աֆրիկյան երկրների էկոնոմիկան գտնվում է զարգացման խիստ ցածր մակարդակի վրա։ Դա բացատրվում է նրանով, որ այստեղ տիրապետում է օտարերկրյա կապիտալը։ Անգլիայի, Ֆրանսիայի, ԱՄՆ-ի, Բելգիայի իմպերիալիստական մոնոպոլիաները, ընկնելով առավելագույն շահույթներ կորզելու հետևից, կողոպտում և դաժանորեն շահագործում են աֆրիկյան ժողովուրդներին։ Նրանք զավթել են առավել բերրի հողերի հսկայական մասը, օգտակար հանածոների աղբյուրները, վերահսկում են տրանսպորտը, ֆինանսները և ամեն կերպ խանգարում ազգային էկոնոմիկայի զարգացմանը։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտումից հետո ուժեղացավ ամերիկյան մոնոպոլիաների թափանցումը աֆրիկյան կոնտինենտ։ Այժմ ԱՄՆ-ի վերահսկողության տակ է գտնվում ուրանի հանքանյութի հանույթը բելգիական Կոնգոյում, որն ամբողջապես արտահանվում է օվկիանոսից դեպի այն կողմ։ Ամերիկյան կապիտալի դիրքերն զգալիորեն ուժեղացել են Հյուսիսային Ռոդեզիայում, Մարոկկոյում, Հարավ-Աֆրիկյան Միությունում, Լիբերիայում։

Ամերիկյան իմպերիալիստները նոր պատերազմի նախապատրաստման իրենց պլաններում կարևոր տեղ են տալիս Աֆրիկային, իբրև մի ստրատեգիական պլացդարմի, որը շատ մոտ է գտնվում դեմոկրատական լագերի երկրներին։ Միացյալ Նահանգների կողմից Լիբիային պարտադրված ստրկական պայմանագրի հիման վրա ամերիկյան ռազմամոլները այդ երկրի տերիտորիայում կառուցել են իրենց ռազմա-օդային բազաները, որտեղ տեղավորված են ավիացիոն զորամասեր։ Ամերիկյան ռազմական բազաների մի ամբողջ ցանց է կառուցված Մարոկկոյում։ Այստեղ գտնվում են ամերիկյան ռմբակոծիչ և կործանիչ ավիացիայի զորամասերը, իսկ ԱՄՆ-ի զինվորական անձնակազմի թիվը հասնում է 25 հազար մարդու։

ԱՄՆ-ը փորձում է որոշ երկրներ, օրինակ՝ Եգիպտոսը և Լիբիան, ներքաշել ագրեսիվ բլոկների ու խմբավորումների մեջ, որը վճռական հակահարվածի է հանդիպում այդ պետությունների բնակչության կողմից։

Ամերիկյան կապիտալի թափանցումը Աֆրիկա է՛լ ավելի ուժեղացրեց տեղական բնակչության շահագործումը, որին նա դատապարտում է նոր զրկանքների։

Ինչպես օտարերկրյա գաղութարարների,



այնպես էլ տեղական ֆեոդալների և կալվածատերերի կողմից դաժան շահագործման է ենթարկվում աֆրիկյան գյուղացիությունը։ Գաղութային զավթումների քաղաքականության հետևանքով լավագույն հողերը կենտրոնացվել են օտարերկրյա ընկերությունների և խոշոր գաղութարարների ձեռքում։ Տեղական բնակչությունը զրկված է հովիտների արգավանդ հողերից, իսկ այնպիսի երկրներում, ինչպիսիք են անգլիական գաղութներ՝ Կենիան, Հարավային Ռոդեզիան, քշված են հատուկ շրջաններ, որոնք կոչվում են ռեզերվացիաներ։ Ռեզերվացիաների համար, որպես կանոն, հատկացվում են անջրդի կամ ճահճային հողերը, որտեղ բնակչությունը դատապարտված է սովամահության։ Հարավային Ռոդեզիայում գտնվող 140 հազար եվրոպացիներ գրեթե երկու անգամ շատ հող ունեն, քան տեղի բնակչությունը, որի թիվը հասնում է երկու միլիոնի։

Մարոկկոյում ամերիկյան ռազմական բազաների կառուցման համար տեղի գյուղացիներից խլեցին մի քանի հազար դեսյատին վարելահող։

Լավ չեն ապրում աշխատավորները նաև քաղաքներում։ Հանքահորերում, նավահանգիստներում աշխատանքային օրը տևում է 14—16 ժամ։ Անընդհատ աճում են գները։

Օրինակ՝ Մարոկկոյում նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ գներն աճել են 29 անգամ։ Վատթարանում են աշխատավորների բնակարանային պայմանները, աճում է երեխաների մահացությունը։

Աֆրիկայի աշխատավորների առաջ փակ են կրթության դռները։ Աֆրիկայի երկրներում, որպես կանոն, անգրագետների թիվը հասնում է 80—95 տոկոսի։ Տնտեսական ճնշումն ուժեղանում է քաղաքական լիակատար իրավազրկությամբ և ռասսայական խտրականությամբ, շատ տերիտորիաներում աֆրիկացիների համար պաշտոնապես գոյություն ունի գաղութարարների օգտին կատարվող հարկադիր աշխատանք, որը տարեկան հասնում է երբեմն 100 օրվա։

Աֆրիկյան ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման աճը հետպատերազմյան ժամանակաշրջանի ամենանշանավոր գործոններից մեկն է, որը ցույց է տալիս իմպերիալիզմի գաղութային սիստեմի ճգնաժամի է՛լ ավելի խորացումը։

Վերջին տարիներս ազգային-ազատագրական շարժման կենտրոններից մեկը դարձել են Ֆրանսիայի հյուսիս-աֆրիկյան գաղութները՝ Ալժիրը, Մարոկկոն, Թունիսը։ Ալժիրի և Թունիսի աշխատավորները պաշտպանեցին ի-



րենց կոմունիստական պարտիաների գոյության իրավունքը, որոնք հանդես են գալիս ազգային բոլոր ուժերի միավորման օգտին։

Այդ երկրներում ազատագրական պայքարին մասնակցում է ոչ միայն պրոլետարիատը, որն ընթանում է ավանգարդում, այլև գյուղացիությունը, առաջավոր ինտելիգենցիան, արհեստավորները, ազգային բուրժուազիան։

Պայքարի ընթացքում, հակառակ բուրժուաազգային որոշ պարտիաների լիդերների կամքի, որոնք հրաժարվում են կոմունիստների հետ համագործակցելուց, կոփվում է միասնական հակաիմպերիալիստական ճակատը։

Անկախության համար մղվող պայքարում լուրջ հաղթանակ տարավ Թունիսի ժողովուրդը։ Ֆրանսիական գաղութարարների ադմինիստրացիան գրեթե երեք տարի շարունակ փորձում էր հրով ու սրով խեղդել երկրում աճող ազգային-ազատագրական շարժումը։ Կոմունիստական պարտիան արգելվեց և փակվեցին նրա տպագիր օրգանները։ Հազարավոր հայրենասերներ, այդ թվում Կոմպարտիայի ղեկավարները, նետված են համակենտրոնացման ճամբարները։ Հարյուրավոր թունիսցիներ դատապարտվել են աք-

սորի և մահապատժի ենթարկվել միայն այն պատճառով, որ նրանք անկախություն են պահանջում իրենց հայրենիքի համար։

Բայց երկրում չկարողացան ընկճել ազատագրական շարժումը։ Գաղութային տեռորի ուժեղացմանը բանվորները պատասխանեցին գործադուլներով։ Մի շարք շրջաններում ժողովուրդը զենքի դիմեց։

1954 թվականի ամռանը ֆրանսիական կառավարությունն ստիպված եղավ հայտարարել, որ ինքը բավարարում է պայքարող ժողովրդի որոշ պահանջները և ճանաչում Թունիսի «ներքին ավտոնոմիան»։ Այդ նշանակում է, որ Թունիսն առաջվա նման մըտնելու է ֆրանսիական գաղութային կայսրության մեջ, իսկ երկրի ներքին գործերի կառավարումը հանձնվելու է իրենց՝ թունիսցիներին։

«Ներքին ավտոնոմիան» երկրի հայրենասիրական ուժերը համարում են առաջին քայլը՝ լիակատար անկախության ճանապարհին։ Թունիսի աշխատավորները պայքարում են «ներքին ավտոնոմիան» իրոք իրականացնելու համար, ընդհանուր ընտրությունների միջոցով սուվերեն Ազգային ժողով ստեղծելու համար, Թունիսի այնպիսի կառավարություն ստեղծելու համար, որը պատասխա-



նատու լինի այդ ժողովի առաջ, պայքարում են աշխատավոր բնակչության դրության բարելավման համար։

Իրենց իրավունքներն արիաբար պաշտպանում են Ալժիրի բանվորները, պահանջելով բարելավել աշխատանքի պայմանները, ավելացնել աշխատավարձը, սահմանել սոցիալական ապահովագրության սիստեմ։ Ալժիրի նավահանգիստների դոկերները ցույց տվին պրոլետարական ինտերնացիոնալիզմի օրինակ. ամբողջ հինգ տարի նրանք հրաժարվեցին սպասարկել այն նավերը, որոնք բեռներ էին տանում Վյետնամում մղվող «կեղտոտ պատերազմի» համար։ 200-ից ավելի անգամ գործադուլ է հայտարարվել այդ առթիվ։ Գործադուլներն անցնում էին՝ «Մենք չենք դառնա մեր ճնշողների վարձկանները» լոզունգով։

1954 թվականի նոյեմբերյան օրերին լեռնային շրջանում տեղի ունեցան գյուղացիական զինված ելույթներ գաղութարարների դեմ, որոնք տեղական բնակչությանը զրկել էին արգավանդ հողերից։ Այդ ելույթները համերաշխության շարժում առաջ բերին Ալժիրի մի շարք քաղաքներում։ Ապստամբների դեմ գաղութարարները դուրս բերին հարյուր հազարանոց մի բանակ, որը զինված էր տան-

կերով, գրահամեքենաներով, ինքնաթիռներով։ Բայց պատժիչ միջոցների դիմող գաղութարարներին մինչև այժմ էլ չհաջողվեց ջախջախել ապստամբածներին։

Տեղական նեգր բնակչությունից խլված հողերը վերադարձնելու, նրան քաղաքական և սոցիալական իրավունքներ տալու համար համառ պայքար ծավալեց անգլիական արևելա-աֆրիկյան գաղութ Կենյայի ժողովուրդը։ Անգլիական գաղութային ադմինիստրացիան փորձում է տեռորի միջոցով ճնշել Կենյայի բնակչության պայքարը։ Կենյայի Աֆրիկացիների միության՝ երկրի այդ ամենամասսայական կազմակերպության գործունեությունն արգելված է։ Ազատագրական շարժումը ճնշելու համար գործի են դրվել անգլիական կանոնավոր զորքերը, որոնց պաշտպանում են տանկերը, ավիացիան, հրետանին։

Անգլիական պաշտոնական տվյալներով, երկրում երկու տարվա պատժիչ գործողությունների ընթացքում, սպանվել է մոտ 7 հազար նեգր, մի քանի տասնյակ հազարավոր մարդիկ դատի են տրվել, որոնցից շատերը քշվել են համակենտրոնացման ճամբարները։

Աֆրիկայի ժողովուրդների պայքարը հա-



մակրանք և աջակցություն է գտնում ամբողջ առաջադեմ մարդկության կողմից։ Այսպես, Անգլիայում նշվեց Կենիայում անգլիական կառավարության գործողությունների դեմ ուղղված բողոքի օրը։ 1955 թվականի սկզբներին Ֆրանսիայի մի շարք քաղաքներում տեղի ունեցան բողոքի միտինգներ՝ ընդդեմ Ալժիրում գաղութային ադմինիստրացիայի ծավալված տեռորի։

Ապրիլին Հնդկաստանի մայրաքաղաք Դելիում տեղի ունեցավ ասիական երկրների կոնֆերենցիա՝ միջազգային հարաբերությունների լարվածությունը թուլացնելու վերաբերյալ։ Կոնֆերենցիայի ընդունած Դիմումի մեջ ասված է, որ նա «արտահայտում է իր խորին համակրանքը Կենիայի, Մարոկկոյի, Թունիսի, Ալժիրի ժողովուրդներին... Իր զայրույթն է արտահայտում Հյուսիսային Աֆրիկայի՝ իրենց ազատության համար պայքարող ժողովուրդների նկատմամբ կիրառվող տեռորի ու գազանությունների դեմ և կոչ անում անհապաղ վերջ դնելու այդ բարբարոսությանը»։

Ապրիլի 18-ից մինչև 24-ը Ինդոնեզիայի Բանդունգ քաղաքում տեղի ունեցավ Ասիայի և Աֆրիկայի երկրների կոնֆերենցիան, որի աշխատանքներին մասնակցում էին ամբողջ

մարդկության ավելի քան կեսը ներկայացնող 29 երկրների դելեգացիաները։ Աֆրիկյան երկրներից կոնֆերենցիային մասնակցում էին Եգիպտոսը, Լիբիան, Եթովպիան, Լիբերիան, Ոսկե ափը, Սուդանը։

Իր եզրափակիչ կոմյունիկեում կոնֆերենցիան հայտարարեց, որ ինքը պաշտպանում է բոլոր ստրկացված ժողովուրդների ազատության և անկախության գործը, ընդգծելով, «որ գաղութացումը իր բոլոր դրսևորումներով մի չարիք է, պետք է արագորեն կանխվի»։ Կոնֆերենցիան արտահայտվեց հօգուտ այն բանի, որ լայնորեն զարգացվեն Ասիայի և Աֆրիկայի երկրների տնտեսական ու կուլտուրական կապերը մյուս կոնտինենտների երկրների հետ, որ անհրաժեշտ է է՛լ ավելի ամրապնդել այդ կապերը ասիական և աֆրիկական երկրների միջև։ Ընդհանուր խաղաղությանը և համագործակցությանը աջակցելու վերաբերյալ կոնֆերենցիայի ընդունած դեկլարացիայում ասված է, որ «ազատությունը և խաղաղությունը կապված են միմյանց հետ»։ Այդ դեկլարացիայի հիմքում դրված են խաղաղ համագործակցության՝ լայնորեն հայտնի այն հինգ սկզբունքները, որոնց վրա են ներկայումս խարսխվում այնպիսի պետությունների փոխ-



հարաբերությունները, ինչպիսիք են Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, Հնդկաստանը, Բիրման։

Արդեն իսկ պատմության մեջ առաջին անգամ Ասիայի և Աֆրիկայի երկրների այդպիսի ներկայացուցչական կոնֆերենցիայի հրավիրման բուն փաստը և նրա աշխատանքի արդյունքները արտացոլում են այն հսկայական փոփոխությունները, որոնք վերջին ժամանակներս տեղի են ունեցել երկրագնդի այդ շրջաններում, վկայում են այն մասին, որ ինչպես Ասիայի, այնպես էլ Աֆրիկայի ժողովուրդները ձգտում են իրենց բախտը վերցնել իրենց ձեռքը, լի են գաղութային ճնշման և պատերազմի նախապատրաստման իմպերիալիստական քաղաքականության դեմ պայքարելու վճռականությամբ։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԹԱՆԳԱՐԱՆՆԵՐԸ

Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ տարիներից հատուկ ուշադրություն նվիրվեց ռեսպուբլիկայում նոր թանգարաններ կազմակերպելու գործին։

Այժմ մեր ռեսպուբլիկայում կա ավելի քան 20 թանգարան։ Այդ թանգարանների մի զգալի մասը գտնվում է Երևանում։

✪ Մայրաքաղաքի աշխատավորությունը իրավամբ պարծենում է իր կերպարվեստի (Պատկերասրահ) թանգարանով։

Պատկերասրահն ունի հայկական, ռուսական, արևմտաեվրոպական գեղանկարչության բաժիններ։

Թանգարանի բազմաթիվ ցուցասրահներում ներկայացված են հայկական գեղանկարչության արվեստի խոշոր վարպետների հոյակապ գործերը, ինչպես նաև միջնադարյան հայ մանրանկարչության խոշոր վարպետներ՝ Թորոս Ռոսլինի և Սարգիս Պիծակի գործերը։ Հայ գեղարվեստի զարդն ու պսակն է կազմում Հովնաթան ընտանիքի (17—19-րդ դարեր) 6 սերունդների խոշոր գործերը։



Պատկերասրահում ներկայացված են ռուսական կերպարվեստի հռչակավոր վարպետներ՝ Ռեպինի, Սուրիկովի, Կրամսկու, Պերովի, Վերեշչագինի, Այվազովսկու, Սերովի և շատ ու շատ ուրիշների օրիգինալ, հանճարեղ գործերը։

Գեղարվեստի թանգարանի արևմտաեվրոպական բաժնի ցուցադրությունն սկսվում է իտալական վերածննդի արվեստի ցուցադրումից և վերջանում ժամանակակից եվրոպական արվեստի գործերով։

✪ Ռեսպուբլիկայի բոլոր թանգարանների մեջ իր ուրույն տեղն ունի Պետական պատմական թանգարանը, որը հիմնադրվել է 1921 թվականին։

Հայտնի է, որ Հայաստանը հարուստ է պատմական հուշարձաններով, որոնք արտահայտում են մեր ժողովրդի անցյալի կուլտուրան։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ Հայաստանը տարբեր ժամանակաշրջանների պատկանող առաջնակարգ հուշարձանների մի թանգարան է, որը ստեղծագործել և կերտել է հայ ժողովուրդը իր բազմադարյան անդուլ աշխատանքով։

✪ Հայաստանի մայրաքաղաք Երևանում է գտնվում նաև աշխարհի ամենահնագույն մատենադարաններից մեկը։ Հայաստանի Մատենադարանն այժմ ունի 9—19-րդ դարերին պատկանող 10.000 ամբողջական ձեռագիր և 300 պատառիկներ։ Հայաստանի Մատենադարանը դարձել է հին հայերեն ձեռագիր-գրքեր պահող հիմնարկների մեջ ամենամեծը, որի մոտ Վենետիկի,

Վիեննայի, Երուսաղեմի հայկական միաբանությունների, ինչպես նաև աշխարհիս մեծագույն թանգարանների և գրադարանների ժողովածուները թե՛ քանակի և թե՛ գիտական արժեքի տեսակետով շատ ետ են մնում նրանից։

Մատենադարանում պահվում են այնպիսի ձեռագրեր, որոնց հունարեն, ասորերեն և այլ լեզուներով բնագրերը կորել են, կամ մեծ փոփոխությունների են ենթարկվել և այդ աշխատությունները այժմ գիտությանը հայտնի են միայն հայերեն թարգմանությամբ։

Հետաքրքիր է նաև Մատենադարանում պահպանվող մեզ հասած հայերեն ամենամեծ ձեռագիրը, որն ունի 36 կգ. քաշ։ Նա բացված վիճակում հազիվ է տեղավորվում գրասեղանի վրա։ Ձեռագիրը բաղկացած է 360 մագաղաթյա հաստ թերթերից, չհաշված պակասող թերթերը։ Այստեղ է գտնվում նաև մեզ հասած ամենափոքր ձեռագիրը։ Կազմով նրա մեծությունն է 4×3 սմ., կշիռն է 19 գր.։ Ձեռագիրը բաղկացած է 103 մագաղաթյա թերթիկից։

Մատենադարանում կարելի է գտնել հայկական գրեթե բոլոր պատմիչների աշխատությունների լավագույն և հնագույն ընդօրինակությունները և բնագրերը։ Մատենադարանի ձեռագրերն ունիկում նյութեր են ոչ միայն հայ, այլ նաև Անդրկովկասի, Մերձավոր Արևելքի և Միջին ասիական ժողովուրդների պատմության բազմակողմանի ուսումնասիրության համար։

Այժմ Մատենադարանի համար կառուցվում է մոնու-



մենտալ շենք, որը հիմնականում ավարտված է և այժմ գնում են նրա հարդարման ու ներքին ձևավորման աշխատանքները։ 1955 թվականի վերջում Մատենադարանն իր հարուստ գանձերով կտեղավորվի այդ մոնումենտալ շենքում։

✪ Սովետական իշխանության հաստատման առաջին օրերին է կազմակերպվել նաև Երևան քաղաքի Պատմության թանգարանը։

Տարիների ընթացքում թանգարանի ֆոնդերը հարստացել են հնագիտական և ազգագրական արժեքավոր էքսպոնատներով, փաստաթղթերով և բազմաթիվ իլյուստրացիոն նյութերով։

Անցյալ տարի հիմնական վերանորոգման ենթարկվեցին ցուցադրական դահլիճները։ Կազմված է թանգարանային ցուցադրության գիտական էքսպոզիցիոն պլան։ Երևանի Պատմության թանգարանի կոլեկտիվը արդեն սկսել է իրագործել այդ պլանը։ Ցուցահանդեսում զգալի տեղ է գրավելու «Հին Երևանի Ուրարտական շրջանի պատմությունից մինչև մեր օրերը» բաժինը։

✪ Հայ ժողովրդի մեծ զավակ Ստեփան Շահումյանի կյանքը և ռևոլյուցիոն գործունեությունը խոշոր նշանակություն ունի մեր երիտասարդության դաստիարակության գործում։

ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի և Ժողկոմսովետի որոշմամբ 1935 թվականին Ստեփանավանում բացվեց ականավոր բոլշևիկ Ստեփան Շահումյանի տուն-թանգարանը։

Քսան տարվա ընթացքում թանգարանում Շահումյանի վերաբերյալ հավաքվել են մեծ թվով փաստաթղթեր, հուշեր, նրա կյանքի հետ կապված իրեր և այլ էքսպոնատներ։

Թանգարանի երեք ցուցասրահներում ցույց է տրված մեծ Լենինի հավատարիմ աշակերտ Ստ. Շահումյանի կյանքն ու ռևոլյուցիոն գործունեությունը, սկսած 1890-ական թվականներից մինչև 1918 թվականը։

✪ Հաջողությամբ գործում են նաև Լենինականի, Կիրովականի, Նոր-Բայազետի, Գորիսի, Իջևանի, Դիլիջանի գավառագիտական թանգարանները։

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ԲԱՑՎԱԾ Է

## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“-Ի

1955 թվականի հունիս—դեկտեմբեր ամիսների

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ*

*6 ամիսը — 6 ռ.*
*Մեկ համարը — 50 կոպեկ*

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 10 1955 г.

*ՎՖ 10531 Պատվեր 464 Տիրաժ 8200*

---

*ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կոմունյանցի № 8, 1955 թ., գինը 50 կոպ.։*